Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 7 ԱՊՐԻԼ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, 11 հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78

# ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ

## ՍՏԱԼԻՆՅԱՆ ՄԱՐԶԻ ԱՇԽԱՏԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՄԵՋ ՏԱՐՎՈՂ ՄԱՍՍԱՅԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՎԻՃԱԿԻ ԵՎ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ՍՄԿՊ Կենտկոմը որոշում է ընդունել «Ստալինյան մարզի աշխատավորության մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, նշվում է այս որոշման մեջ, հաստատեց կոմունիստական շինարարության հոյակապ ծրագիրը մեր երկրում։ Ներկա պայմաններում, երբ Սովետական Միությունը թևակոխել է իր պատմական զարգացման նոր շրջանը, պարտիական կազմակերպությունները պետք է վճռականորեն բարձրացնեն գաղափարական-քաղաքական և կազմակերպչական աշխատանքի մակարդակը, համակողմանի և լայնորեն օգտագործեն մասսաների կոմունիստական դաստիարակության բոլոր բազմազան ձևերն ու միջոցները, մոբիլիզացնեն սովետական ժողովրդի ստեղծագործ ուժերը՝







յոթնամյա պլանը կատարելու և գերակատարելու համար։

Լսելով և քննարկելով «Ստալինյան մարզի աշխատավորության մեջ տարվող մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակի և բարելավման միջոցառումների մասին» Ուկրաինայի Կոմունիստական պարտիայի Ստալինյան մարզկոմի և ՍՄԿՊ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի զեկուցումները, ՍՄԿՊ Կենտկոմը նշեց, որ Ստալինյան մարզային պարտիական կազմակերպությունը վերջին տարիների ընթացքում աշխատավորության մեջ ծավալված մեծ կազմակերպչական, մասսայական-քաղաքական աշխատանքի շնորհիվ լուրջ հաջողություններ է ձեռք բերել տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում։

Սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման, ժողովրդական տնտեսության ղեկավարման վերակառուցման, պլանավորման, պետական և հասարակական կազմակերպությունների աշխատանքի ոճի և մեթոդների բարելավման ուղղությամբ պարտիայի կողմից վերջին տարիների ընթացքում իրականացված կարևորագույն միջոցառումները նպաստեցին ժողովրդական



տնտեսության բոլոր բնագավառների նոր հզոր վերելքին, աշխատավորների նյութական բարեկեցության բարձրացմանը, մասսաների նախաձեռնության և ակտիվության ստեղծագործական աճին։ Մարզի պարտիական կազմակերպությունները, որոնց մարտունակությունը զգալիորեն բարձրացել է, սկսեցին ավելի լայնորեն կիրառել կազմակերպչական և գաղափարական-դաստիարակչական աշխատանքի բազմաթիվ միջոցները՝ տնտեսական և կուլտուրական շինարարության խնդիրները հաջողությամբ լուծելու նպատակով։

Ներկայումս մարզում, ինչպես և ամբողջ երկրում, նոր ուժով է ծավալվել սոցիալիստական մրցությունը՝ յոթնամյա պլանի առաջին տարվա առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։ Ն. Մամայի, Ա. Կոլչիկի և արտադրության այլ նորարարների մեթոդով կոնկրետ ուղիներ են գտնում արտադրանքի թողարկումը ավելացնելու, ինքնարժեքը իջեցնելու, որակը բարձրացնելու համար։ Լայն չափեր է ստացել կոմունիստական աշխատանքի բրիգադների շարժումը, ինչպես նաև ծնվում են սոցիալիստական մրցության շատ ուրիշ նոր ձևեր։

Մարզի պարտիական կազմակերպություն-

ները բարձրացրել են քաղաքական ակտիվության մակարդակը։ XXI համագումարի կապակցությամբ հատկապես աշխուժացել է ագիտացիոն-մասսայական աշխատանքը, նա դարձել է ավելի հրատապ, կոնկրետ, կոմունիստական շինարարության պրակտիկայի կարևորագույն հարցերին համապատասխանող։ Մասսայական-քաղաքական աշխատանքում մասնակցում են շատ պարտիական, սովետական, արհմիութենական և տնտեսական ղեկավարներ, ինչպես նաև արտադրության առաջավոր մարդիկ, ինժեներներ և տեխնիկներ, գյուղատնտեսության մասնագետներ։ Պարտիայի մի շարք քաղկոմներ և շրջկոմներ սիստեմատիկ կերպով ընդհանրացնում և քննարկում են բանվորների ու կոլտնտեսականների առաջարկությունները, քննադատական դիտողությունները և դրանց վերաբերյալ ընդունում անհրաժեշտ միջոցառումներ։

Շատ ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում պարտիական կազմակերպությունները բանվորների և կոլտնտեսականների աշխատանքային ակտիվությունը բարձրացնելու, արտադրության արմատական հարցերի լուծման մեջ նրանց ներգրավելու նպատակով



հմտորեն գործադրում են աշխատանքի բազմապիսի ձևեր և մեթոդներ. աշխատանքի կազմակերպումը, բանվորական տեղերի վիճակը, տեխնիկայի օգտագործումը ստուգող մասսայական-հասարակական ստուգատեսներ և ռեյդեր, մշտապես գործող արտադրական խորհրդակցություններ, տնտեսական և արտադրական-տեխնիկական կոնֆերանսներ, առաջավոր բրիգադաների օրեր, սոցիալիստական պարտավորությունների կատարման փոխադարձ ստուգումներ։ Մեծ աշխատանք է կատարվում արդյունաբերական և գյուղատնտեսական արտադրության նորարարների փորձը ընդհանրացնելու և արմատավորելու գծով։

Երիտասարդությանը բանվոր դասակարգի ռևոլյուցիոն և աշխատանքային տրադիցիաներով դաստիարակելու գործում կարևոր դեր են խաղում ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, հիմնարկներում և ուսումնական հաստատություններում կազմակերպվող հանդիպումները Հոկտեմբերյան ռևոլյուցիայի, քաղաքացիական և Հայրենական Մեծ պատերազմների վետերանների, արտադրության անվանի մարդկանց հետ։ Բանվորների և կոլտնտեսականների շրջանում ժողովրդականություն են վայելում բա-

նավոր և ձայնալուսային ժուռնալները, կինոթերթերը, երգիծական թերթիկները, «Համքափորի հեռուստատեսի» հատուկ ծրագրերը, կուլտուրայի երեկոյան համալսարանները և մասսայական-քաղաքական աշխատանքի շատ այլ ձևերը։

Այդ բոլորը զգալիորեն հարստացնում է քաղաքական ագիտացիայի բովանդակությունը, բարձրացնում աշխատավորության հետաքրքրությունը պարտիական կազմակերպությունների կողմից անցկացվող միջոցառումների նկատմամբ, դրականապես է ազդում մարզի ժողովրդա-տնտեսական պլանների կատարման վրա։

Միևնույն ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմը նշում է, որ Ստալինյան մարզային պարտկազմակերպությունում դեռևս գոյություն ունեն լուրջ թերություններ մասսայական-քաղաքական աշխատանքի դրվածքի մեջ։ Արդյունաբերության, գյուղատնտեսության և կուլտուրական շինարարության բնագավառում հաջողությունները կարող էին զգալիորեն ավելի շատ լինել, եթե բոլոր պարտիական կազմակերպությունները ամենօրյա քաղաքական խոր աշխատանք տանեին մասսաների մեջ։ Շատ պարտկազմակերպություններ չեն կենսագործում մշտական վե-



րահսկողությունը քաղաքական ագիտացիայի բովանդակության նկատմամբ, քիչ են հոգտանում դրա գործունության և օպերատիվության մասին։ Պարտիայի մարզկոմը պատշաճ հաստատակամություն չի ցուցաբերում աշխատավորների կոմունիստական դաստիարակության ձևերի և մեթոդների ամբողջ բազմապիսությունը օգտագործելու համար, ձեռք չի առնում անհրաժեշտ միջոցառումներ մարզի մի շարք պարտիական կազմակերպություններում կուտակված արժեքավոր փորձը լայնորեն տարածելու համար։

Երկրի կյանքում կատարվող կարևորագույն իրադարձությունները, միջազգային դրության հարցերը, պարտիայի և կառավարության որոշումները միշտ չէ, որ ժամանակին, հասկանալի և համոզեցուցիչ կերպով են բացատրվում բանվորներին ու կոլտնտեսականներին։ Զեկուցումներում ու զրույցներում անբավարար են օգտագործվում ցայտուն, կենսական փաստերն ու օրինակները, որոնք օգնում են ունկնդիրներին ավելի խոր յուրացնելու պարտիայի քաղաքականությունը։ Ագիտացիան հաճախ կրում է դեկլարատիվ, մակերեսային և ձևական բնույթ, չի կապակցվում տվյալ ձեռնարկության կամ կոլտնտեսության կոնկրետ խնդիրների հետ, չի ուղղվում աշխատանքի

դժվարությունները հաղթահարելուն, աշխատանքային կարգապահությունը ամրապնդելուն, այդ պատճառով էլ հաճախ ազդեցություն չի գործում արտադրական խնդիրների լուծման վրա։

Դեռևս թույլ է տարվում մասսայական-քաղաքական աշխատանքը գիշերային հերթափոխություններում, քաղաքամերձ և հեռավոր բնակավայրերում ապրող աշխատավորների շրջանում։ Ըստ բնակավայրի, հանրակացարաններում տարվող քաղաքական ագիտացիան կազմակերպվում է ոչ կանոնավոր, կամպանիայի ձևով, շատ ագիտկետեր չեն աշխատում։ Որոշ ղեկավարներ թույլ են կապված ձեռնարկությունների կոլեկտիվների՝ բանվորների, ծառայողների և տեխնիկական ինտելիգենցիայի հետ և աշխատավորության շրջանում ամենօրյա մասսայական-քաղաքական աշխատանք չեն տանում։

Ագիտացիոն աշխատանքում անբավարար է հաշվի առնվում լենինյան դրույթը այն մասին, թե յուրաքանչյուր ագիտատորի վարպետությունը պետք է կայանա լսարանի հետ կապ հաստատելու, լավագույն կերպով նրա վրա ազդելու մեջ, յուրաքանչյուր կոնկրետ դեպքում նպատակ դնելու և այդ նպատակը



կենսագործելու հմտության մեջ։ Դեռևս միշտ չէ, որ ագիտացիոն- մասսայական աշխատանքում հասնում են կոնկրետության և նպատակասլացության։

Շատ պարտիական կազմակերպություններ, ագիտատորներ, դասախոսներ, զեկուցողներ թույլ են պայքարում տեղայնության, գռփողության, համապետական շահերը արհամարհելու դրսևորումների դեմ, համապատասխան հասարակական կարծիք չեն ստեղծում այն անձանց շուրջը, որոնք խախտում են աշխատանքային և արտադրական կարգապահությունը, սոցիալիստական համակեցության կանոնները։ Շատ դեպքերում նրանք անցնում են ժողովրդական սեփականության հափշտակման, հարբեցողության, գործալքության փաստերի կողքով, միշտ չէ, որ ժամանակին և խիստ վերաբերմունք են ցույց տալիս բուրժուական գաղափարախոսության դրսևորումների, տարբեր ասեկոսների, զրպարտիչ հերյուրանքների նկատմամբ, որ տարածում են թշնամական և քաղքենիական տարրերը։

Որոշ գյուղական պարտիական կազմակերպություններ մասսայական-քաղաքական աշխատանքում հարկավոր ուշադրություն չեն կենտրոնացնում կոլտնտեսային կարգի

հետագա զարգացման արմատական խնդիր-
ների լուծման վրա, այն է՝ գյուղատնտեսա-
կան կուլտուրաների բերքատվության բարձ-
րացումը, հանրային անասնապահության
ըստ ամենայնի զարգացումը և նրա մթերա-
տվության բարձրացումը, արտադրանքի մեկ
միավորին ընկնող աշխատանքի ծախքերի
իջեցումը, հողագործության կուլտուրայի
բարձրացումը, տեխնիկայի ռացիոնալ օգ-
տագործումը, կոլտնտեսությունների անբա-
ժանելի ֆոնդերի ավելացումը, միջկոլտնտե-
սային ձեռնարկությունների կառուցումը, ա-
ռաջավոր փորձի ուսումնասիրումը և տարա-
ծումը։ Մի շարք կոլտնտեսություններում
հազվադեպ են անցկացնում դասախոսու-
թյուններ ու զեկուցումներ, չկա ռադիո, վատ
է դրված բնակչության կենսասպասարկման
գործը, թույլ են աշխատում գեղարվեստա-
կան ինքնագործունեության խմբակները։
Թերթերն ու ժուռնալները շատ կոլտնտե-
սությունների, բրիգադների և ֆերմաների
մեծ ուշացումով են հասցնում։

Քաղաքական-մասսայական աշխատանք-
ների լուրջ թերությունների գլխավոր պատ-
ճառներից մեկն այն է, որ շատ պարտիա-
կան կազմակերպություններում անբավա-
րար հիմքերի վրա է դրված ագիտատորների



ընտրության, դասավորման և դաստիարա-
կության գործը, բացակայում է մշտական
վերահսկողությունը ագիտատորների, դասա-
խոսների, զեկուցողների գործունեության
նկատմամբ, նրանց աշխատանքներին սիս-
տեմատիկ օգնություն ցույց չեն տալիս։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիայի Ստալինյան
մարզկոմին առաջարկել է ձեռք առնել մի-
ջոցներ՝ մարզային պարտիական կազմակեր-
պությունում մասսայական-քաղաքական
աշխատանքի կուտակված դրական փորձը
ամրապնդելու և լայնորեն տարածելու, ինչ-
պես նաև տույն որոշման մեջ նշված լուրջ
թերությունները վերացնելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմը բոլոր պարտիական և
կոմերիտական կազմակերպությունների ա-
ռաջնակարգ խնդիրն է համարում պարտիա-
յի XXI համագումարին ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության զարգացման 1959—1965
թվականների կոնտրոլ թվերի մասին Ն. Ս.
Խրուշչովի զեկուցման, ՍՄԿՊ XXI պատմա-
կան արտահերթ համագումարի որոշումների
խոր ուսումնասիրությունն ու պարզաբա-
նումը, մասսաների մեջ բազմակողմանի
պարտիական-քաղաքական աշխատանք ծա-
վալելը՝ ժողովրդի բոլոր ուժերը մոբիլիզաց-
նելու ուղղությամբ այդ որոշումները կենսա-

գործելու, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջադրանքները կատարելու և գերակատարելու համար։

Այդ նպատակով լայնորեն օգտագործել մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր ձևերը՝ աշխատավորների ժողովների, զրույցների, զեկուցումների, դասախոսությունների կազմակերպումը, մամուլը, կինոն, ռադիոն, հեռուստատեսությունը և կուլտուր-լուսավորական հիմնարկությունները։

ՍՄԿՊ Կենտկոմը թերթերի և ժուռնալների խմբագիրներին, հրատարակչությունների դիրեկտորներին պարտավորեցրել է ապահովել ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների և փաստաթղթերի խոր լուսաբանումը, ընդհանրացնել համագումարի նյութերի պրոպագանդայի դրական փորձը, հրատարակել հոդվածներ և նյութեր, հրատարակել գրքեր, հանրամատչելի բրոշյուրներ, դիտողական ձեռնարկներ՝ նվիրված յոթնամյա պլանի հիմնական տեսական պրոբլեմներին և գործնական խնդիրներին, ենթարկելով այդ ամբողջ աշխատանքը այն բանին, որ օգնություն հասցվի պարտիական կազմակերպություններին՝ աշխատավորությանը մոբիլի-



զացնելու համար պարտիայի XXI համագումարի որոշումները կենսագործելու նպատակով։

ՍՍՌՄ Կուլտուրայի մինիստրությանն առաջարկված է ապահովել ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պրոպագանդմանն ու կենսագործմանը նվիրված գիտա-հանրամատչելի կինոֆիլմերի և կինոխրոնիկային ժուռնալների թողարկումը։

ՍՄԿՊ Կենտկոմը ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից ռադիոհաղորդումների և հեռուստատեսության Պետական Կոմիտեին պարտավորեցրել է՝

կենտրոնում և տեղերում ռադիոյի միջոցով կազմակերպել դասախոսությունների և զրույցների ցիկլեր ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը, համագումարի կողմից դրված տեսական պրոբլեմները և պրակտիկ խնդիրները լուսաբանելու համար, որպես հեղինակներ ներգրավել լավագույն ագիտատորներին և պրոպագանդիստներին, գիտնականներին, պարտիական և սովետական աշխատողներին, ժուռնալիստներին, արվեստի գործիչներին.

կենտրոնական ռադիոհաղորդման մեջ կանոնավոր հաղորդումներ մտցնել ռեսպուբլիկաներից, երկրամասերից և մարզերից՝

նվիրված նրանց կյանքի և յոթնամյա պլանով նախատեսված զարգացման հեռանկարների ցուցադրմանը.

Հեռուստատեսության գծով ապահովել հատուկ ծրագրերի, հեռուստատեսային ֆիլմերի և այլ հաղորդումների սիստեմատիկ տրանսլյացիան, որոնք ակնառու և համոզիչ կերպով ցույց տան ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կենսագործման գործում սովետական ժողովրդի կոնկրետ հաջողությունները և հոյակապ հեռանկարները։

Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման Համամիութենական ընկերության Վարչությանը և նրա տեղական բաժանմունքներին առաջարկված է՝ անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել ուժեղացնելու ընկերության բոլոր անդամների աշխատանքը ՍՄԿՊ XXI համագումարի կողմից պարտիայի և ժողովրդի առջև դրված թեորիական հարցերի ու պրակտիկ խնդիրների պարզաբանման ուղղությամբ։

ՍՄԿՊ Կենտկոմը հիշեցրել է պարտիական կազմակերպություններին, որ ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների պարզաբանումը կարճատև կամպանիա չէ, այլ երկարատև ժամանակաշրջանի հիմնական խնդիր։ Այդ խնդրի կենսագործմանը



պետք է մասնակցեն բոլոր կոմունիստները և ամենից առաջ պարտիական ակտիվը։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել է այն բանի վրա, որ ներկա պայմաններում, երբ մեր երկիրը թևակոխել է իր զարգացման նոր կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության, մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերը ձեռք են բերում առաջնակարգ նշանակություն, դառնում են պարտիական, սովետական, կոմերիտական, արհմիութենական և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեության կենտրոնական հարցերը։

Կոմունիզմի կառուցումը օրգանապես կապված է բոլոր քաղաքացիների գիտակցության անընդհատ բարձրացման, աշխատավորներին, առանձնապես երիտասարդությանը, կոմունիստական բարոյականության, աշխատանքի, հասարակության հանդեպ իրենց պարտականությունների նկատմամբ ճիշտ վերաբերմունքի ոգով դաստիարակելու հետ։

Մասսայական-քաղաքական աշխատանքի հիմնական խնդիրն է՝ խորապես պարզաբանել սովետական ժողովրդի մեծ հաղթանակների նշանակությունը, որոնք նշանավորում են պարտիայի լենինյան գծի հաղթանակը, բացահայտել կոմունիստական շինարարության փայլուն հեռանկարները, աշխատավորությանը ոգեշնչել ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները կատարելու համար։ Գաղափարական-դաստիարակչական, մասսայական-քաղաքական ամբողջ աշխատանքը պետք է կրի կոնկրետ, նպատակասլաց բնույթ, նպաստի սովետական ժողովրդի ջանքերի մոբիլիզացմանը, բազմապատկմանը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի առաջադրանքների կենսագործման, 1959 թվականի՝ յոթնամյակի առաջին տարվա պլանի կատարման և գերակատարման համար։

Պարտիական կազմակերպությունները, պրոպագանդիստներն ու ագիտատորները պետք է պարզ և մատչելի ձևով աշխատավորներին բացատրեն, թե ինչ է կոմունիզմը, ինչպիսի մեծ բարիքներ է բերում նա ժողովրդին, ակտիվ կերպով պաշտպանեն և ամեն կերպ զարգացնեն կոմունիզմի ծիլերը։



Անհրաժեշտ է, որպեսզի սովետական մարդիկ խորապես պարզեն իրենց համար, որ կոմունիստական իդեալները կարող են կենսագործվել միայն հասարակության նյութական ու հոգևոր բարիքների առատության պայմաններում, իսկ այդ պայմաններն ստեղծելու համար առաջնակարգ նշանակություն ունի մետաղի, մեքենաների արտադրությունը, նավթի, քարածխի հանույթը, էլեկտրաէներգիայի արտադրությունը, հացահատիկի, մսի, յուղի հագուստեղենի, կոշկեղենի արտադրությունը, բնակարանների շինարարությունը։

Պրոպագանդիստների ու ագիտատորների կարևորագույն պարտավորությունն է յուրաքանչյուր աշխատավորի գիտակցությանը հասցնել, որ մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել առաջավոր կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու խնդիրը հաջողությամբ կլուծվի միայն այն ժամանակ, երբ մենք հասնենք աշխատանքի ավելի բարձր արտադրողականության։ Հարկավոր է սիստեմատիկաբար պարզաբանել աշխատավորներին, որ յոթնամյա պլանի կատարումն ու գերակատարումը նոր խոշոր քայլ կհանդիսանա կոմունիզմի ճանապարհին, որ տնտեսության բո-

 



լոր ճյուղերի նոր վերելքը և այդ հիման վրա
ժողովրդի կենսամակարդակի նշանակալի
բարձրացումը կախված են բանվոր դասա-
կարգի, կոլտնտեսային գյուղացիության և
ինտելիգենցիայի ջանքերից, սովետական
յուրաքանչյուր մարդու բարձր արտադրողա-
կան աշխատանքից։

Կյանքի, գործնական խնդիրների հետ
մասսայական-քաղաքական աշխատանքի ա-
վելի սերտ կապը նրա հաջողության գրավա-
կանն է։ Արդյունաբերական ձեռնարկություն-
ների պարտիական կազմակերպությունները
քաղաքական ագիտացիան պետք է կառու-
ցեն այնպես, որ ապահովվի յուրաքանչյուր
ձեռնարկության, տեղամասի, ցեխի, բրիգա-
դայի, յուրաքանչյուր բանվորի արտադրա-
կան պլանի անպայման կատարումը, ռիթ-
միկ աշխատանքը, աշխատանքի արտադրո-
ղականության ամեն կերպ բարձրացումը,
որակի բարելավումը, թողարկվող արտա-
դրանքի ինքնարժեքի իջեցումը, միջոցների ու
նյութերի խստագույն խնայողությունը, ար-
տադրության մեքենայացման և ավտոմա-
տացման լայն ներդրումը, նոր տեխնիկայի
յուրացումն ու լավագույն օգտագործումը,
առաջավոր փորձի պրոպագանդումն ու ներ-
դրումը։



Գյուղական պարտիական կազմակերպու-
թյուններին առաջարկված է գլխավոր ուշա-
դրությունը կենտրոնացնել ՍՄԿՊ XXI հա-
մագումարի ցուցումների և ՍՄԿՊ Կենտկո-
մի Դեկտեմբերյան պլենումի «Վերջին հինգ
տարում գյուղատնտեսության զարգացման
արդյունքները և գյուղատնտեսական մթերք-
ների արտադրության հետագա ավելացման
խնդիրները» որոշման բազմակողմանի պար-
զաբանման և կենսագործման վրա։ Ուժե-
ղացնել պայքարը գյուղատնտեսական բո-
լոր կուլտուրաների բերքատվության հետա-
գա բարձրացման, հանրային անասնաբու-
ծության անասունների գլխաքանակի աճի և
բարձր մթերատվության, կոլտնտեսություն-
ներում ու սովխոզներում՝ առաջին հերթին
եգիպտացորենի ցանքերի հետագա ավելաց-
ման հաշվին ամուր կերի բազայի ստեղծ-
ման, գյուղատնտեսական տեխնիկայի խը-
նամքով և առավել լրիվ օգտագործման, կոլ-
տնտեսությունների կազմակերպական- տըն-
տեսական ամրապնդման, կոլտնտեսային
միջոցների ու աշխօրերի ծախսման գործում
ավելորդությունների լիկվիդացման համար։
Անհրաժեշտ է բացատրել կոլտնտեսական-
ներին, ինչպես նաև սովխոզների ու ՆՏԿ-նե-
րի բանվորներին, որ ներկայումս գյուղա-

տնտեսության մեջ, ինչպես նաև ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում առաջին պլանն են քաշում աշխատանքի արտադրողականության կազմակերպման ու բարձրացման, արտադրանքի մեկ միավորի վրա կատարվող ծախսերի կրճատման հարցերը։

Պարզաբանելով XXI համագումարի որոշումները, ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի խնդիրները, պարտիական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որ աշխատավորները գիտենան ոչ միայն ընդհանուր թվերը, այլև այն, թե ինչ ժամկետներում, ինչ պետք է անել տվյալ ձեռնարկությունում, տվյալ կոլտնտեսությունում ու սովխոզում, ներքին ինչ հնարավորություններ ու ռեզերվներ կան և ինչպես ավելի լավ օգտագործել դրանք, աշխատանքում ավելի բարձր հաջողության հասնելու համար ինչպիսի նյութական խթան գոյություն ունի։ Պարտիական կազմակերպությունների, ագիտատորների կարևորագույն խնդիրն է յուրաքանչյուր ձեռնարկությունում, կոլտնտեսությունում, սովխոզում, հիմնարկում ստեղծել ստեղծագործական աշխատանքի և արտադրական վերելքի մթնոլորտ, ամեն կերպ զարգացնել աշ-



խատավոր լայն մասսաների ակտիվությունն ու ինքնագործունեությունը, ավելի լայնորեն ծավալել քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որպես ճիշտ միջոց աշխատանքում եղած թերությունների հայտնաբերման և վերացման գործում։

Անհրաժեշտ է ամեն կերպ տարածել կոմունիստական աշխատանքի բրիգադաների աշխատանքի փորձը, որոնց անդամները իրենց առջև խնդիր են դնում հասնելու աշխատանքի բարձր արտադրողականության և դրա հետ միասին պարտավորվում են բարձրացնել ընդհանուր կրթական և տեխնիկական մակարդակը, տիրապետել սոցիալիստական կուլտուրայի բարձունքներին, անհաշտ պայքար մղել անցյալի մնացուկների դեմ։ Նմանապես և հարկավոր է խրախուսել սոցիալիստական մրցության մյուս ձևերը, որ ծնվում են արդյունաբերության մեջ, տրանսպորտում, գյուղատնտեսության մեջ և մեր տնտեսության մյուս ճյուղերում։

Պարտիական կազմակերպությունները պարտավոր են այսուհետև էլ պաշտպանել ու զարգացնել առաջավոր կոլտնտեսությունների, սովխոզների, շրջանների շնորհակալ նախաձեռնությունը, որոնք պարտավորություն են վերցրել ժամկետից շատ կատարել

յոթնամյակի առաջադրանքները մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրության ավելացման ուղղությամբ, հիանալի շարժման հիմք են դրել այն բանի համար, որպեսզի հասնենք Ամերիկայի Միացյալ Նահանգներին բնակչության մեկ շնչին ընկնող անասնաբուծական մթերքների արտադրությամբ։

Արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ և տրանսպորտում առաջավոր փորձի տարածման նպատակով լայնորեն ներգրավել հենց արտադրության նորարարներին։ Հաճախակի կիրառել նորարարների փորձի մասին զրույցների, հանրամատչելի դասախոսությունների անցկացումը, ցուցադրել տեխնիկական և ագրոտեխնիկական ֆիլմեր, էքսկուրսիաներ կազմակերպել դեպի լավագույն ձեռնարկությունները, ցեխերը, բրիգադաները, ֆերմաները։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրել է ուժեղացնել աշխատավորության դաստիարակման աշխատանքը կոլեկտիվիզմի և աշխատասիրության, հասարակական պարտքի գիտակցման, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, կոմունիս-



տական բարոյականության բարձր սկզբունքների պահպանման ոգով։

Հատուկ ուշադրություն դարձնել մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկների և ամենից առաջ այնպիսի խայտառակ երևույթների դեմ պայքարն ուժեղացնելու վրա, ինչպես արհամարհանքն է հասարակական աշխատանքի և կարգապահության նկատմամբ, սոցիալիստական սեփականության հափշտակությունը, հարբեցողությունը, խուլիգանությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան։ Անհաշտ պայքար մղել բուրժուական գաղափարախոսության զանազան դրսևորումների դեմ, վճռականապես մերկացնել ամեն տեսակ քչփչացողներին, զրպարտիչներին, սուտ լուրեր և հակասովետական հերյուրանքներ տարածողներին։

Անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել բարելավելու գիտա-աթեիստական պրոպագանդան։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրել է հատուկ ուշադրություն դարձնել մասսայական-քաղաքական աշխատանքի ուժեղացման վրա ետ մնացող ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզ-

ներում, եւ մնացող տեղամասերն ամրապնդել որակյալ կադրերով, լավ կազմակերպիչներով: Բարձրացնել սկզբնական պարտկազմակերպությունների պատասխանատվությունը արտադրության մեջ գործերի դրության համար, ժողովրդա-տնտեսական պլանների կատարման համար:

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը հրավիրել է այն բանի վրա, որ քաղաքական ագիտացիայի գործում անհրաժեշտ է ղեկավար աշխատողների անմիջական մասնակցությունը, որպես աշխատավորների դաստիարակության գործում պարտիայի ամբողջ գործունեության հաջողության կարևորագույն պայման: Մասսաների հետ գործնական, ամենօրյա կապը պետք է լուրջ չափանիշ լինի յուրաքանչյուր ղեկավարի աշխատանքի գնահատման համար:

Ղեկավար աշխատողներին քաղաքական ագիտացիային մասնակից դարձնելու նպատակով ՍՄԿՊ Կենտկոմը անհրաժեշտ է գտնում՝

ապահովել, որ պարտիական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և տնտեսական կազմակերպությունների ղեկավարները քաղաքական զեկուցում-



ներով սիստեմատիկաբար հանդես գան աշխատավորների առջև: Պարտիայի մարզկոմների, քաղկոմների, շրջկոմների և սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարները պարտավոր են անձնական օրինակ ցույց տալ այդ գործում.

որ առևտրի, ժողովրդական կրթության, առողջապահության և կոմունալ սպասարկման տարբեր կազմակերպությունների ու ձեռնարկությունների ղեկավարները քաղաքական զեկուցումների հետ մեկտեղ բնակչության առջև ավելի հաճախ հանդես գան նաև իրենց գլխավորած հիմնարկությունների ու ձեռնարկությունների աշխատանքի հարցերի շուրջը.

պարտիական կոմիտեները հաճախակի պետք է քննարկեն մասսայական-քաղաքական աշխատանքին պարտիական ակտիվի մասնակցության հարցերը, ամփոփեն բնակչության առջև ղեկավարների ունեցած ելույթների արդյունքները, հաշվի առնեն և ուսումնասիրեն աշխատավորների առաջարկությունները ու դիտողությունները, դրանց առթիվ ձեռք առնեն գործնական միջոցներ: Զեկուցողներին կանոնավոր կերպով ինֆորմացիա տալ կոմունիստական շինարարության, թեորիայի ու պրակտիկայի,

ՍՍՌՄ միջազգային դրության կարևորագույն հարցերի վերաբերյալ.

Հանձնարարել պարտկազմակերպություններին՝ օգտագործել արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների աշխատավորների առջև Ստալինյան ժողտնտխորհի ղեկավար աշխատողների և մասնագետների պարբերական ելույթների փորձը՝ ժողտնտխորհի աշխատանքի վերաբերյալ հաշվետվությունների հետ միասին։ Հետագայում ավելի լայնորեն կիրառել աշխատավորների առջև ղեկավար աշխատողների ու մասնագետների ելույթները արտադրական, ընդհանուր-քաղաքական և գիտատեխնիկական հարցերի շուրջը։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրն է համարում ագիտատորների ընտրության, դասավորման ու դաստիարակության գործի բարելավումը։ Այդ նպատակով ապահովել ագիտատորների խնամքով ընտրությունը առավել պատրաստված կոմունիստների, կոմերիտականների, արտադրության առաջավորների, ինտելիգենցիայի, ղեկավար աշխատողների թվից։ Ագիտատորների լավագույն ուժերը կենտրոնացնել արտադրության վճռական տեղամասերում։ Վերա-



կանգնել պարտիական բյուրոներում և պարտիական ժողովներում ագիտատորներին հաստատելու և նրանց հաշվետվությունները քննարկելու պրակտիկան. Թույլ չտալ ագիտատորների ծանրաբեռնումը այլ հանձնարարություններով.

ագիտատորներին կանոնավոր կերպով ինֆորմացիա տալ ներքին և արտաքին քաղաքականության կարևորագույն հարցերի վերաբերյալ, տնտեսական ու կուլտուրական շինարարության պլանների կատարման ընթացքի մասին, նրանց սովորեցնել կենսական պրոցեսները խորապես վերլուծելու, պարտիայի քաղաքականությունը այս կամ այն ձեռնարկության, կոլտնտեսության, հիմնարկության կոլեկտիվի առջև ծառացած կոնկրետ խնդիրների հետ շաղկապելու հմտություն։ Անհրաժեշտ համարել, որպեսզի ագիտատորների առջև սիստեմատիկաբար հանդես գան պարտիայի մարզկոմների, քաղկոմների և շրջկոմների առաջին քարտուղարները, աշխատավորների դեպուտատների մարզային, քաղաքային և շրջանային Սովետների գործկոմների նախագահները, տնտեսական կազմակերպությունների ղեկավարները.

կանոնավոր կերպով անցկացնել ագիտա-

տորների սեմինարներ ագիտացիոն-մասսայական աշխատանքի բովանդակության ու մեթոդիկայի զանազան հարցերի շուրջը։ Պրակտիկա դարձնել ագիտատորների սեմինարների կազմակերպումը անմիջականորեն այն առաջավոր ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, որտեղ կա մասսայական-քաղաքական աշխատանքի դրական փորձ.

պարբերաբար անցկացնել ագիտատորների քաղաքային, շրջանային, ինչպես նաև ըստ արդյունաբերության ու գյուղատնտեսության ճյուղերի ժողովներ, որտեղ ավելի լայնորեն կիրառել ագիտացիոն աշխատանքի դրական փորձի փոխանակումը.

Նշելով, որ ագիտատորների դպրոցներ ստեղծելու ուղղությամբ Լենինգրադի, Ստալինյան, Ադրբեջանի, Սվերդլովսկի և մի շարք այլ պարտկազմակերպությունների փորձն արդարացրել է իրեն, հանձնարարել պարտիական կազմակերպություններին՝ լայնորեն օգտագործել ագիտատորների ուսուցման այդ ձևը։ Դպրոցների ուսումնական ծրագրերը հաստատել պարտիական կոմիտեների բյուրոներում, հաշվի առնելով յուրաքանչյուր քաղաքի, շրջանի, ձեռնար-



կության, կոլտնտեսության առանձնահատկությունները.

սահմանել, որ ագիտկոլեկտիվների ղեկավարներ կարող են լինել ոչ միայն պարտկազմակերպությունների քարտուղարները, այլև պարտիական ակտիվին պատկանող առավել պատրաստված ուրիշ կոմունիստներ։ Պարտիայի քաղկոմներն ու շրջկոմները պետք է կանոնավոր կերպով հրավիրեն ագիտկոլեկտիվների ղեկավարների խորհրդակցություններ ու սեմինարներ, որտեղ կատարեն փորձի փոխանակում, քննարկեն ագիտացիոն աշխատանքի մեթոդիկայի հարցերը, աշխատավորության մեջ անցկացվող հերթական զեկուցումների ու զրույցների թեմաները.

պարտավորեցնել քաղաքական լուսավորության տներին ու կաբինետներին օգնություն ցույց տալ ագիտատորներին անհրաժեշտ գրականություն ու նյութեր ընտրելու գործում, կազմակերպել նրանց համար խմբական ու անհատական կոնսուլտացիաներ, ընդհանրացնել ու տարածել մասսայական-քաղաքական աշխատանքի դրական փորձը։

Մասսայական-քաղաքական աշխատանքի անցկացման գործում պարտկազմակերպություններին ու ագիտատորներին օգնու-

թյուն ցույց տալու համար հանձնարարել ՍՄԿՊ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժնին, Պետքաղհրատարակչությանը պարբերաբար հրատարակել հանրամատչելի «Ագիտատորի գրադարան» ինչպես ագիտացիոն աշխատանքի պրակտիկայի հարցերի, այնպես էլ ընդհանուր քաղաքական կարևորագույն հարցերի շուրջը։ Որպես բրոշյուրների հեղինակներ լայնորեն ներգրավել պարտիական աշխատողների, գրողների, ագիտատորների, արդյունաբերության ու գյուղատնտեսության մասնագետների։

«Ագիտատոր» ժուռնալի խմբագրությանը առաջարկված է գլխավոր ուշադրությունը կենտրոնացնել այն բանի վրա, որ օգնություն ցույց տրվի ագիտատորներին ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումներն ու նյութերը, յոթնամյա պլանի խընդիրները, Սովետական Միության ներքին ու միջազգային դրությունը պարզաբանելու և պրոպագանդելու գործում։ Հաճախակի հրապարակել կոնկրետ փաստեր ու թվեր պարունակող հոդվածներ ու նյութեր, որոնք ցույց տան սոցիալիստական սիստեմի գերազանցությունը կապիտալիստականի նըկատմամբ, աշխատավոր մասսաների ստեղծագործական ակտիվության և ինքնագոր-



ծունեության աճումը։ Լայնորեն լուսաբանել պարտիական կազմակերպությունների, ագիտկոլեկտիվների և ագիտատորների մասսայական-քաղաքական աշխատանքի դրական փորձը։ Ավելի մեծ չափով ժուռնալին մասնակից դարձնել տեղական աշխատողներին։

«Պրավդա» թերթի, «Պարտիյնայա ժիզն» և «Ագիտատոր» ժուռնալների խմբագրություններին հանձնարարված է լուսաբանել Ստալինյան մարզային պարտիական կազմակերպության մասսայական-քաղաքական աշխատանքի փորձը։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրել է միջոցներ ձեռք առնել բարձրացնելու մարզային, քաղաքային, շրջանային, բազմատիրաժ թերթերի դերը աշխատավորների քաղաքական դաստիարակության, մասսայական-քաղաքական աշխատանքի վիճակն ու դրական փորձը լուսաբանելու գործում։ Կանոնավոր կերպով նյութեր հրապարակել թերթերի էջերում ագիտատորներին օգնելու համար։ Թերթերին լայնորեն մասնակից դարձնել արտախմբագրական ակտիվին, ավելի շատ տպագրել աշխատավորների նամակներ։

Պարտիական կազմակերպությունններին առաջարկված է աշխատավորների մեջ մասսայական-քաղաքական աշխատանք կատարելիս ստեղծագործաբար օգտագործել քաղաքական ագիտացիայի՝ կյանքի կողմից ստուգված բոլոր բազմազան ձևերն ու մեթոդները, այն է՝ զեկուցումներ, թերթերի ընթերցումներ, քաղինֆորմացիաներ, զրույցներ և այլն, ինչպես նաև ամեն կերպ պաշտպանել նոր, արժեքավոր նախաձեռնությունները։ Հատուկ ուշադրություն դարձնել զրույցների անցկացմանը, որպես քաղաքական ագիտացիայի կարևոր և մատչելի ձևերից մեկը, որոնք հնարավորություն են տալիս ժամանակին արձագանքելու բնակչության հուզող հարցերին։ Ղեկավար աշխատողները, ագիտատորները պետք է հաճախակի անբռնազբոսիկ, հոգեբուխ զրույցներ անցկացնեն աշխատավորների հետ արտադրության մեջ, նրանց բնակավայրում, ըստ որում չխուսափել սուր, հրատապ հարցերից, դրանց տալ ճշմարտացի ու պարզորոշ պատասխաններ, ուշադիր կերպով արձագանքել բնակչության պահանջներին։

Հասնել այն բանին, որ ագիտատորը չսահմանափակվի համաժողովրդական խնդիրների, պարտիայի ու կառավարության որոշումների ձևական պարզաբանումով, այլ հաստատակամորեն պայքարի դրանց կենսագործման համար, անձնական օրինակ ցույց տա աշխատանքում, համապետական շահերն ըմբռնելու գործում։

ՍՄԿՊ Կենտկոմը Ուկրաինայի ԿՊ Ստալինյան մարզկոմին պարտավորեցրել է միջացներ ձեռնարկել, որպեսզի սիստեմատիկ աշխատանք տարվի բնակչության բոլոր խավերի մեջ։ Այդ նպատակով՝

ապահովել աշխատավորների՝ արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների, շինարարների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի մեջ քաղաքական աշխատանքի անցկացման նկատմամբ դիֆերենցված մոտեցումը, ընդսմին հաշվի առնելով արտադրության բնույթը, տվյալ կոլեկտիվի տրամադրություններն ու պահանջները, մարդկանց պատրաստվածության մակարդակը, ինչպես նաև ազգային կազմն ու բնակչության տարբեր խմբերի (կանայք, երիտասարդություն, ընտանիքի անդամ և այլն) մյուս առանձնահատկությունները.

բարելավել մասսայական-քաղաքական աշխատանքը գիշերային հերթափոխությունների բանվորների մեջ։ Պարտիական, տըն-

տեսական, արհմիութենական և կոմերիտական ղեկավարները պետք է կանոնավոր կերպով հաճախեն գիշերային հերթափոխություններ և այնտեղ անհրաժեշտ աշխատանք տանեն։ Բանվորների հանգստի ժամերին (ցերեկվա ժամերին) հաճախակի կարդալ դասախոսություններ, զեկուցումներ, ցուցադրել կինոնկարներ, կազմակերպել գեղարվեստական ինքնագործունեություն և այլն.

քաղաքներից դուրս ապրող արդյունաբերական ձեռնարկությունների բանվորների մեջ մասսայական-քաղաքական աշխատանք տանելու համար առանձնացնել հատուկ ագիտատորներ։ Բանվորական գնացքներն ապահովել թերթերով, ժուռնալներով, փոքրիկ գրադարաններով, կուլտ-պիտույքներով, ինչպես նաև ռադիոֆիկացիայի ենթարկել դրանք։ Այն բնակավայրերը, որտեղ ապրում են այդ բանվորները, ուղարկել ագիտկուլտ բրիգադաներ, շարժական կինոներ, շրջիկ գրավաճառներ.

բարելավել մասսայական-քաղաքական աշխատանքի անցկացումը հեռավոր բրիգադաներում, անասնաբուծական ֆերմաներում, դաշտակայաններում գտնվող կոլտնտեսականների մեջ, մեխանիզատորների



մեջ, առանձնապես գյուղատնտեսական կարևորագույն աշխատանքների կատարման ժամանակաշրջանում.

բարձրացնել մասսայական-քաղաքական աշխատանքի մակարդակը աշխատավորների մեջ նրանց բնակավայրերում։ Այդ աշխատանքի կենտրոնը պետք է լինի ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, խոշոր բնակելի շենքերում, հանրակացարաններում և բանավաններում մշտապես գործող ագիտկետերը։ Ակումբներում, կուլտուրայի տներում, կարմիր անկյուններում, ագիտկետերում կազմակերպել տեղեկատուսեղաններ, սահմանել ագիտատորների հերթապահություն, որոնք կարողանային իրենք կամ համապատասխան աշխատողների օգնությամբ պատասխանել աշխատավորների մոտ ծագող հարցերին.

հասնել աշխատանքի բարելավմանը հանրակացարաններում։ Այնտեղ ունենալ սարքավորված կարմիր անկյուններ, ռադիո, թերթեր ու ժուռնալներ, սեղանի խաղեր։ Հանրակացարաններում աշխատելու համար առանձնացնել առավել պատրաստված կոմունիստներին և կոմերիտականներին, ինչպես նաև աշխատանքի վետերաններին։ Ապահովել դաստիարակների խնամքով ընտ-

րությունը հանրակացարանների համար։ Հանձնարարել սկզբնական պարտկազմակերպություններին դաստիարակներին հաստատել պարտբյուրոների նիստերում։ ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպությունների ուշադրությունը բևեռեց սիստեմատիկաբար բանվորական ու կոլտնտեսային ժողովներ հրավիրելու անհրաժեշտության վրա։ Ժողովներում հաճախակի քննարկել ձեռնարկությունների, կոլտնտեսությունների, հիմնարկների կոլեկտիվների արտադրական գործունեության հարցերը, բնակարանային շինարարության ու կուլտ-կենցաղային սպասարկման հարցերը, ինչպես նաև ընդհանուր քաղաքական հարցերը։ Բարձրացնել ժողովների գործունությունը, սիստեմատիկ վերահսկողություն ապահովել քննարկված հարցերի, աշխատավորների քննադատական դիտողությունների և ցանկությունների առթիվ ընդունված որոշումների կատարման համար։ Պրակտիկա դարձնել արհմիութենական և տնտեսական կազմակերպությունների ղեկավարների, կոլտնտեսությունների վարչությունների հաշվետվությունների լսումը՝ նախորդ ժողովների որոշումների կատարման մասին։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմա-



կերպությունների կարևորագույն խնդիրն է համարում դաստիարակչական աշխատանքի վճռական ուժեղացումը երիտասարդության մեջ։ Գլխավոր ուշադրությունը դարձնել երիտասարդությանը բանվոր դասակարգի հերոսական տրադիցիաներով, աշխատանքի, իր մասնագիտության նկատմամբ սիրո ոգով, սովետական հայրենասիրության և ժողովուրդների բարեկամության ոգով դաստիարակելու վրա։ Պատանիների ու աղջիկների մեջ պատվաստել բարձր բարոյական հատկություններ։ Հասնել այն բանին, որ բոլոր երիտասարդ բանվորներն ու բանվորուհիները, կոլտնտեսականներն ու կոլտնտեսուհիները մասնակից դարձվեն հասարակական-մասսայական միջոցառումներին։ Ապահովել դաստիարակչական աշխատանքի բարելավումը դպրոցական ու ուսանողական երիտասարդության մեջ, այդ աշխատանքը ենթարկելով դպրոցը կյանքի հետ կապելու և մեր երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման ուղղությամբ պարտիայի ու կառավարության նշած միջոցառումների հաջող իրականացմանը։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտիական կազմակերպություններին պարտավորեցրել է մեծ

հոգատարություն ցուցաբերել հանգստի և տոն օրերին աշխատավորների մեջ քաղաքական ու կուլտուր-լուսավորական աշխատանք տանելու մասին։ Պրակտիկա դարձնել այդ օրերին ղեկավար աշխատողների ելույթները աշխատավորների առջև, հանդիպումները գիտության, գրականության և արվեստի գործիչների, արտադրության նորարարների հետ, զբոսանքների կազմակերպումը հրապարակներում, պարկերում, պուրակներում, սպորտային մրցումները, ղեկավար աշխատողների մասնակցությամբ բանվորների ու ծառայողների կոլեկտիվ մեկնումները քաղաքից դուրս և այլն։

Բարձրացնել ակումբների, կուլտուրայի տների և մյուս կուլտուր-լուսավորական հիմնարկների դերը աշխատավորների մեջ, հատկապես գյուղական վայրերում տարվող մասսայական-քաղաքական աշխատանքում։ Ակումբները, կուլտուրայի տները, գրադարանները պետք է պրոպագանդեն պարտիայի քաղաքականությունն ու որոշումները, պարզաբանեն գիտության ու տեխնիկայի նվաճումները, տարածեն արտադրության առաջավորների փորձը, նախաձեռնություն հանդես բերեն գյուղերի ու բանվորական ավանների բարեկարգման, կանաչա-



պատման աշխատանքների ուղղությամբ և այլն։ Անհրաժեշտ է, որ կուլտուրայի ամեն մի պալատ և տուն իրականում մեթոդական կենտրոն դառնա բանվորական ու գյուղական ակումբների համար։

Պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններին, Կուլտուրայի մինիստրությանը և նրա տեղական օրգաններին առաջարկված է ապահովել գեղարվեստական ինքնագործունեության հետագա ըստ ամենայնի զարգացումը, բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի լայն մասնակցությունը դրան։ Հասնել այն բանին, որ յուրաքանչյուր ակումբում, կուլտուրայի պալատում ստեղծվեն դրամատիկական, երգեցիկ, երաժշտական կոլեկտիվներ։ Վերականգնել ինքնուրույն ժողովրդական թատրոնների ստեղծման լավ պրակտիկան։ Ուժեղացնել պրոֆեսիոնալ թատրոնների, ֆիլհարմոնիաների և արվեստի մյուս հիմնարկների շեֆական օգնությունը գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվներին։

ՍՄԿՊ Կենտկոմը պարտկազմակերպություններին առաջարկել է բազմազան դարձնել և կոնկրետացնել ցուցադրական ագիտացիան, ցուցադրական ագիտացիայի մի-

ջոցով լայնորեն պրոպագանդել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը, սոցիալիստական մրցության առաջավորների նվաճումները, արտադրության նորարարների աշխատանքի փորձն ու մեթոդները։ Այդ նպատակով ավելի լայնորեն օգտագործել պլակատները, կոչերը, հատուկ վահանններն ու ստենդները, ցուցատախտակները, աշխատանքային փառքի թերթիկները, կայծակ թերթիկները, երգիծական թերթերը, գունավոր և կինոթերթերը և այլ ձևեր։

Սովետական նկարիչների միությանը և Իզոգիզ-ին հանձնարարված է պատրաստել ու հրատարակել ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության յոթնամյա պլանի խնդիրները և հետագա զարգացման հեռանկարները պարզաբանող գունեղ քաղաքական պլակատներ ու դիագրամաներ։ Ապահովել, որ մեծ տիրաժով սիստեմատիկաբար հրապարակվեն ՌՈՍՏԱ-ի պատուհանների տիպի պլակատներ հրատապ թեմաների վերաբերյալ, տեքստերով և առանց տեքստերի (տեքստերը տեղում տպագրելու համար), ինչպես նաև գունեղ մակետներ պատի թերթերի համար, երգիծական թերթիկներ, աշխատանքային փառքի թերթիկներ, կայծակ թերթիկներ և այլն։

---

ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

---

# ՓԱՅԼՈՒՆ ՀԱՂԹԱՆԱԿ

*Ա. ՍԱՐԳՍՅԱՆ*

Կոմունիստների և անպարտիականների անխախտ բլոկը փայլուն հաղթանակ տարավ Հայկական ՍՍՌ Գերագույն և տեղական Սովետների ընտրություններում։ Ընտրություններին մասնակցել են 1.045.300 մարդ, որը կազմում է ընտրողների ընդհանուր թվի 99,99 տոկոսը։ Բոլոր ընտրական օկրուգներում կոմունիստների և անպարտիականների բլոկի թեկնածուների օգտին քվեարկել են 1.043.178 ընտրող, որը կազմում է քվեարկությանը մասնակցած ընտրողների ընդհանուր թվի 99,80 տոկոսը։

Կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի թեկնածուների օգտին միահամուռ քվեարկությամբ, ռեսպուբլիկայի աշխատավորները նոր ուժով ցուցադրեցին Կոմունիստական պարտիայի, Սովետական կառավարության և մեր ամբողջ ժողովրդի մեծ միասնությունը։

Ռեսպուբլիկայի Գերագույն և տեղական

Սովետների դեպուտատության թեկնածու-
ների օգտին տրված ավելի քան մեկ միլիոն
ձայները հանդիսանում են ամենացայտուն
արտահայտությունն այն բանի, որ մեր
փառապանծ Կոմունիստական պարտիայի
կողմից մշակված և հետևողականորեն կեն-
սագործվող ներքին ու արտաքին քաղաքա-
կանությունը համաժողովրդական հավա-
նություն է ստանում։

Հանճարեղ Լենինի կողմից ստեղծված մեծ
Կոմունիստական պարտիան աշխատավոր-
ների շահերի համար, իր ավելի քան կես
դարյա հերոսական պայքարով նվաճել է
ամբողջ սովետական ժողովրդի սերը և ան-
սահման վստահությունը։ Կազմակերպելով
Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևո-
լյուցիայի հաղթանակը, Կոմունիստական
պարտիան մեր ժողովրդին դուրս բերեց
սոցիալիստական վերափոխումների լայն
ճանապարհը։ Դեռևս Սովետական իշխանու-
թյան առաջին ամիսներին Վ. Ի. Լենինը ժո-
ղովրդի ստեղծագործական ուժերի, բան-
վորների և գյուղացիների կազմակերպա-
կան ունակությունների նկատմամբ մեծ հա-
վատով լի գրում էր՝ «Ինչ էլ որ լինի, պետք
է ջախջախել հին, անմիտ, վայրենի, նող-
կալի և զազրելի այն նախապաշարմունքը»



թե իբր պետություն կառավարել, սոցիա-
լիստական հասարակության կազմակերպա-
կան շինարարությունը վարել կարող են մի-
այն այսպես կոչված «բարձր դասակարգե-
րը», միայն հարուստները կամ հարուստ դա-
սակարգերի դպրոցն անցածները... Կազմա-
կերպական աշխատանքը մատչելի է նաև
այն շարքային բանվորին ու գյուղա-
ցուն, որը գրագետ է, ճանաչում է մարդ-
կանց, ունի գործնական փորձառություն։
Այդպիսի մարդիկ «հասարակ ժողովրդի»
մեջ, որի մասին բուրժուական ինտելիգենտ-
ները խոսում են ամբարտավանությամբ և
արհամարհանքով, բազմաթիվ են։ Այդպիսի
տաղանդները բանվոր դասակարգի և գյու-
ղացիության մեջ դեռ կուսական աղբյուր և
հարստագույն աղբյուր են»։

Հետևելով լենինյան իմաստուն ցուցում-
ներին Կոմունիստական պարտիան բանվոր-
ների և գյուղացիների միջից հոգատարու-
թյամբ ընտրում, առաջ է քաշում և դաս-
տիարակում հազարավոր տաղանդավոր
կազմակերպիչների։

Ընկ. Ն. Ս. Խրուշչովը 1958 թվականի
մարտի 14-ին Մոսկվա քաղաքի Կալինին-
յան ընտրական օկրուգում, ընտրողների ժո-
ղովում արտասանած իր ճառում ասաց՝

«Մեր երկրի աշխատավորները խորապես շահագրգռված են, որպեսզի դեպուտատ ընտրեն ժողովրդի ամենալավ և ամենաարժանավոր ներկայացուցիչներին, հենց դրա համար էլ մեր ժողովուրդը Գերագույն Սովետի ընտրությունները համարում է իր կենսական գործը»։

Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները իրենց լավագույն որդիներին և դուստրերին ընտրել են ռեսպուբլիկայի բարձրագույն օրգանում՝ Գերագույն Սովետում, ինչպես նաև քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետներում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի և տեղական Սովետների 1959 թվականի մարտի 15-ին ընտրված դեպուտատների կազմը պերճախոս կերպով վկայում է, որ ռեսպուբլիկայի Գերագույն և տեղական Սովետների ղեկի մոտ իրոք կանգնած են ժողովրդի ծոցից ելած մարդիկ, առաջավոր բանվորներ և գյուղացիներ, մեր ռեսպուբլիկայի ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչներ, որոնք գործով ապացուցել են ժողովրդին հավատարմորեն ծառայելու իրենց պատրաստակամությունը։ Եթե նախորդ ընտրությունների ժամանակ մեր ռեսպուբլիկայի գյուղական Սովետներում



ընտրվել էր 9.335 դեպուտատ, ապա այս տարի ընտրվել է 12.881 դեպուտատ, որից 6.570-ը կամ ընտրված դեպուտատների 51 տոկոսը անպարտիականներ են, նախորդ ընտրությունների 4.081 հոգու կամ 43,6 տոկոսի փոխարեն։ Ընտրված դեպուտատներից 9.527-ը կոլտնտեսականներ են։ Այս տարի գյուղական Սովետներում ընտրվել են 5.526 կանայք, նախորդ ընտրությունների ժամանակ ընտրված 2.918-ի փոխարեն։ Աշխատավորների դեպուտատների շրջանային Սովետներում այս տարի ընտրվել է 2.663 դեպուտատ, նախորդ ընտրությունների ժամանակ ընտրված 2.162-ի փոխարեն։ Շրջանային Սովետներում ընտրված դեպուտատներից 1.087-ը անպարտիականներ են, 1.062-ը՝ կանայք, 881-ը՝ կոլտնտեսական, 563-ը՝ բանվոր։

Քաղաքային Սովետներում ընտրված 1.425 դեպուտատներից 535-ը անպարտիականներ են, 580-ը՝ բանվորներ, 502-ը՝ կանայք։ Այսպիսով, եթե նախորդ ընտրությունների ժամանակ մեր ռեսպուբլիկայի քաղաքային, շրջանային, ավանային և գյուղական Սովետներում ընտրվել էր 13.367 դեպուտատ, ապա այս տարի ընտրվել է 17.878 դեպուտատ։ Տեղական Սովետներում

ընտրված 17.878 դեպուտատներից 8.592-ը անկուսակցականներ են, նախորդ ընտրությունների ժամանակվա 5.410-ի փոխարեն, ՍՄԿՊ անդամ և թեկնածուներ են 9.286 հոգի, կանանց թիվը կազմում է 7.387 հոգի, կամ 41,32 տոկոսը՝ նախորդ ընտրություններում ընտրված 4.213-ի փոխարեն։ Դեպուտատներից կոլտնտեսականներ են 10.564 հոգի, նախկին ընտրություններում եղած 7.204-ի փոխարեն, բանվորներ՝ 2.547 հոգի, անցյալ ընտրություններում եղած 1.061-ի փոխարեն։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի 300 դեպուտատներից 134-ը բանվորներ և կոլտնտեսականներ են, 97-ը՝ կանայք, 96-ը՝ անկուսակցականներ։ Բոլոր ընտրված դեպուտատներն էլ աշխատանքի մարդիկ են, կոմունիստական շինարարության ակտիվ մասնակիցներ։ Դա ցույց է տալիս Սովետների իսկական ժողովրդական բնույթը։ Դրանում է Սովետական կարգերի արմատական տարբերությունը կապիտալիստականից, որի պայմաններում ամբողջ իշխանությունը պատկանում է շահագործող դասակարգերին, իսկ աշխատավորները փաստորեն զրկված են պետության կառավարմանը մասնակցելու հնարավորությունից։



Իմպերիալիզմի գաղափարախոսները ամեն կերպ գովաբանում են բուրժուական դեմոկրատիան, բուրժուական պառլամենտարիզմը։ Չէ՞ որ փաստ է, որ ԱՄՆ-ի կոնգրեսմենների թվում չկա և ոչ մի բանվոր, ոչ մի ֆերմեր։ Չէ՞ որ փաստ է, որ Մեծ Բրիտանիայի լորդերի պալատում բոլոր տեղերը զբաղեցնում են հերցոգները, մարկիզները, կոմսերը, բարոնները և այլ ազնվականներ։

Մեր Հայրենիքում փառքով և պատվով են պսակվում նրանք, ովքեր իրենց հոգու ամբողջ կորովը դնում են աշխատանքի մեջ։ Ուստի պատահական չէ, որ ժողովուրդը ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի և տեղական Սովետների դեպուտատներ է ընտրել արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորներին, գիտության և արվեստի ներկայացուցիչներին, պարտիական, պետական և հասարակական գործիչներին։

Աշխատավորներն իրենց լավագույն որդիներին և դուստրերին ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի և տեղական Սովետների դեպուտատ ընտրելով, նրանցից պահանջում են, որ նրանք միշտ գտնվեն Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության կողմից առաջադրվող խնդիրների կատարման բարձրության վրա։





*Ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի և տեղական Սովետների նորընտիր դեպուտատները իրենց պարտականությունների կատարումն սկսում են այն պահին, երբ Կոմունիստական պարտիան բոլոր ուժերը մոբիլիզացնում է պայքարելու ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների հոյակապ խնդիրները կենսագործելու համար։*

*Մեր ռեսպուբլիկայի աշխատավորները ջերմորեն ողջունում են իրենց ընտրյալներին և նրանց հաջողություն ցանկանում ի փառս մեր Հայրենիքի հետագա բարգավաճման։*

---

## СОДЕРЖАНИЕ




Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

